Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿ(Բ)Պ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ

№ 19 ՆՈՅԵՄԲԵՐ 1949

# ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

Էջ



Խմբագրության հասցեն.— Երևան, Նալբանդյան 32, ՀԿ(բ)Պ Կենտկոմի Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, հեռախոս՝ 2—52—78։



## ԱՆԱՍՆԱԲՈՒԾՈՒԹՅԱՆ ԶԱՐԳԱՑՄԱՆ ԵՌԱՄՅԱ ՊԼԱՆԻ ԿԱՏԱՐՈՒՄԸ ԿԱԼԻՆԻՆՈՅԻ ՇՐՋԱՆՈՒՄ

«Հանրային, կոլխոզային և սովխոզային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա (1949—1951 թ. թ.) պլանում», որն ընդունել են ՍՍՌՄ Մինիստրների Սովետը և ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեն, ուրվագծված է գյուղատնտեսության հետագա վերելքի վիթխարի ծրագիրը։

Կոլխոզնիկները նոր ուժով ձեռնամուխ են եղել պարտիայի և պետության առաջադրանքների կատարմանը, գիտենալով, որ դրանց հաջող իրականացումը կնշանակի մի նոր, մեծ քայլ դեպի առաջ՝ կոլխոզներն է՛լ ավելի ամրապնդելու և սոցիալիզմից կոմունիզմին անցնելու համար անհրաժեշտ մթերքների առատություն ստեղծելու ճանապարհին։

Հանրային մթերատու անասնաբուծության զարգացման ասպարեզում մյուսներից ավելի առաջ են ընթանում Կալինինո գյուղի

Ստալինի անվան ու «Ավանգարդ» կոլխոզները, Շահնազար գյուղի Միկոյանի անվան, Սարատովկա գյուղի «Կոլեկտիվ աշխատանք» կոլխոզները և այլն, որոնք կատարում և գերակատարում են առաջադրանքները խոշոր և մանր եղջերավոր անասունների գծով։ Նրանցից մի քանիսը արդեն կատարել են խոզերի գլխաքանակի աճման պլանը, անցյալում ունենալով դեռ չծնած մայր խոզերի զգալի գլխաքանակ՝ պլանը գերակատարելու համար։ Թռչնաբուծության զարգացման պլանը գերակատարել է Սարատովկա գյուղի «Կոլեկտիվ աշխատանք» կոլխոզը։

Սակայն հանրային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանի հաջող կատարումը կպահանջի մարդկանց ջանքերի շատ ավելի մեծ լարում։ Բանն այն է, որ առ մեկը հոկտեմբերի անասունների գլխաքանակն ավելացնելու այն առաջադրանքը, որը եռամյա պլանով սահմանված է 1949 թվի համար, շրջանի կոլխոզները կատարել են հետևյալ կերպ. խոշոր եղջերավոր անասուններինը՝ 98,8 տոկոսով, այդ թվում կովերինը՝ 95,5 տոկոսով, ոչխարներինը և այծերինը՝ 100,9 տոկոսով, խոզերինը՝ 92,6 տոկոսով և թռչուններինը՝ 66,1 տոկոսով։



Խոշոր եղջերավոր անասունների և խոզերի պակասող գլխաքանակը կլրացվի ի հաշիվ ծնի։ Ինչ վերաբերում է կովերի և թռչունների թվին ավելացնելու պլանի կատարմանը, ապա անհրաժեշտ կլինի գործադրել ավելի գործնական միջոցառումներ՝ պակասող գլխաքանակը կոլխոզնիկներից, բանվորներից և ծառայողներից գնելու ուղղությամբ։ Դրա հետ միաժամանակ պետք է միջոցներ ձեռք առնվեն անասունների կորստի դեմ պայքարելու համար, արգելելով անասունների բոլոր տեսակների վաճառքը և մորթումը, նախքան անասնաբուծության զարգացման պլանը լրիվ կատարվելը։

Մինչև այժմ էլ դեռ ցածր է կովերի կաթնատվությունը։ Այս տարվա ինը ամսվա ընթացքում. յուրաքանչյուր ֆուրաժային կովից միջին հաշվով ստացվել է 1049 լիտր կաթ՝ 1949 թվի համար սահմանված 1700 լիտրի դիմաց։ Կովերի կաթնատվությունն ավելացնելու համար անհրաժեշտ է կազմակերպել կովերի լրացուցիչ կերակրումը հյութալի կերով, սակայն բնավ ոչ այն կերի հաշվին, որը հատկացված է հանրային մթերատու անասունների կերակրման համար ձմեռային ամբողջ ժամանակաշրջանում։

Անասունների մթերատվությունն ավելաց-

նելու, ինչպես նաև ամբողջ անասնաբուծությունը զարգացնելու համար վճռական նշանակություն ունի կերի ամուր բազայի ստեղծումը, անասունների կերակրման ու պահպանման բարելավումը։

Կալինինոյի շրջանի կոլխոզները կերի սիլոսացման պլանը կատարել են 137,6 տոկոսով, այսինքն՝ պլանից դուրս պատրաստել են ավելի քան 5 հազար տոննա սիլոս։ 100,3 տոկոսով կատարվել է խոտհնձի պլանը, սակայն կոշտ կեր կուտակելու պլանը դեռևս չի կատարված։ Բացի դրանից, խոտը խոտհարքներից փոխադրելու և անասնաբուծական ֆերմաներում դիզելու գործի կազմակերպման ասպարեզում շրջանային կազմակերպությունների և կոլխոզների վարչությունների ցուցաբերած դանդաղկոտության պատճառով, մի շարք վայրերում տեղի է ունենում խոտի փչացում։ Միմիայն վճռական միջոցառումները կարող են ապահովել կոշտ կերի կուտակման աշխատանքների, խոտի, ծղոտի և հարդի փոխադրման աշխատանքների ամենաարագ ավարտումը։

Դրա հետ միասին անհրաժեշտ է շրջանի կոլխոզներում լայնորեն արմատավորել կերային ցանքաշրջանառությունները, առավե-



լապես մերձֆերմային, և ավելի մեծ ուշադրություն նվիրել ճահճակալած ու խոնավ տարածությունների չորացմանը, որոնք մի քանի հազար հեկտար տարածություն են բռնում շրջանում։

Ցեղաբուծական աշխատանքն իր հերթին կարևոր լծակ է ինչպես անասունների մթերատվությունը բարձրացնելու, այնպես էլ ամբողջ անասնաբուծությունը զարգացնելու գործում։ Այդ տեսակետից դեռ շատ անելիք կա։ Կալինինոյի շրջանային կազմակերպություններն ու կոլխոզների վարչությունները և Ստեփանավանի պետական ցեղային անասնաբուծարանի դիրեկցիան պետք է արմատապես բարելավեն ցեղաբուծական աշխատանքը։

Հայաստանի Կ(բ)Պ Կենտկոմի 3-րդ պլենումը խնդիր դրեց՝ էլ ավելի կատարելագործել խոշոր եղջերավոր անասունների նոր Լոռու տիպը ստանալու գործն այն հաշվով, որ 1951 թվին նա ձևավորվի որպես նոր մթերատու հայրենական ցեղ։ Այդ ասպարեզում լայն աշխատանք է ծավալվել շրջանում։ Լավ արդյունքների են հասել Կալինինոյում («Ավանգարդ»), Սարատովկայում, Պրիվոլնոյում։ Սակայն սելեկցիոն — ցեղաբուծական աշխատանքը միշտ չէ, որ զուգակցված է

կերակրման, խնամքի և պահպանման հետ։ Այդ տեսակետից հատուկ ուշադրության է արժանի այն աշխատանքը, որ կատարվում է Լոռու ցեղաբուծական սովխոզում նոր ցեղը կատարելագործելու ուղղությամբ։ Այստեղ 147 ֆուրաժային կովի ընթացիկ տարվա 8 ամսվա միջին կաթնատվությունը կազմել է 2268 լիտր կաթ, կամ 2872 լիտր յուրաքանչյուր կթվող կովից։ «Վենա» մականունով կովը կաթնատվության 300 օրվա ընթացքում տվել է 4924 լիտր կաթ, «Մախսա» կովը՝ 5550 լիտր, «Ակվա» կովը՝ 4720 լիտր։

Շրջանային կազմակերպությունները և կոլխոզների վարչությունները պետք է բացառիկ ուշադրություն նվիրեն նաև գյուղատնտեսական կենդանիների բեղմնավորմանը։ Անասունների բեղմնավորումը իր ճշտությամբ և արդյունքներով կարելի է հավասարեցնել ցանքին՝ դաշտավարության ասպարեզում։ Հոտի աճը կախված է անասունների բեղմնավորման հաջող կատարումից և հետագա ճիշտ խնամքից, պահպանումից ու կերակրումից։

Կալինինոյի շրջանի կոլխոզները, որոնք ունեն մթերատու անասուններ, իրենց աշխատանքը պետք է կազմակերպեն այն հաշ-



վով, որ սեփական վերարտադրությամբ ոչ միայն ապահովեն անասունների գլխաքանակի աճման պլանի կատարումը, այլև ցեղական ցուլիկներ ու հորթեր մատակարարեն ռեսպուբլիկայի այլ շրջանների կոլխոզներին։

Ցեղական մատղաշի և առաջին հերթին ցեղական ցուլիկների ճիշտ կազմակերպված աճեցումը, կերակրումը և պահպանումը հնարավորություն կտա ավելի արագորեն և հաջողությամբ կատարելու պարտիայի ու կառավարության որոշումը՝ կոլխոզային անասնաբուծական ֆերմաներում անասունների ցեղական գլխաքանակն ավելացնելու մասին։ Ուստի պետք է բացառիկ մեծ ուշադրություն նվիրել ցեղական մատղաշի աճեցմանը։ Բանն այն է, որ ցեղական մատղաշի խնամքը, պահպանումը և կերակրումը, մանավանդ հետպատերազմյան ժամանակաշրջանում, բավարար չի կազմակերպված մի շարք կոլխոզներում։ Այդ պատճառով ցեղական մատղաշի աճումն ու զարգացումը խիստ հետ է մնում։ Բավական է, եթե ասենք, որ պետական ստանդարտի և փաստական կենդանի քաշի տարբերությունը կազմում է 15—40 տոկոս, կամ բացարձակ թվերով (ցեղական ցուլիկներինը) 50—100

կիլոգրամ յուրաքանչյուր գլխին։ Միայն 1948 թվին, պետական անասնաբուծարանի շրջաններում, կենդանի քաշը կոնդիցիային չհամապատասխանելու պատճառով, կոնտրակտացիայի ենթարկված 666 գլուխ ցեղական ցուլիկներից ընտրվել և իրացման է հանձնվել ընդամենը 242 ցուլիկ։

Շրջանի կոլխոզներում լայնորեն ծավալվել է անասնաբուծական օբեկտների շինարարությունը։ Արդեն կառուցված ավարտվել է 30 օբեկտի շինարարությունը և ավարտվելու մոտ է 15 օբեկտի շինարարությունը։ Պլանից դուրս կառուցվել է 17 խրամատ, որոնց մի մասը՝ ամառային արոտավայրերում։ Դրանք հատկացված են սիլոս պատրաստելու համար, որն օգտագործվելու է արոտավայրերի բերքատվությունը նվազելիս անասուններին լրացուցիչ կերպով կերակրելու համար։

Կալինինոյի շրջանի սովետական, կոլխոզային ակտիվի վերջերս տեղի ունեցած խորհրդակցությունը պարտավորություն ընդունեց անասնաբուծության զարգացման եռամյա պլանով 1949 թվականի համար սահմանված շինարարությունը ամբողջովին ավարտել Հոկտեմբերյան Սոցիալիստական



Մեծ ռևոլյուցիայի 32-րդ տարեդարձին։ Կասկած չկա, որ Կալինինոյի շրջանի աշխատավորները պատվով կկատարեն իրենց վերցրած պարտավորությունները։

Եռամյա պլանին համապատասխան, այս տարի Կալինինոյում կազմակերպվել է Մեքենա—անասնաբուծական կայան, որը լայնորեն ծավալել է իր աշխատանքը, գերակատարել է կերի հայթայթումը մեքենայացնելու պլանը և ձեռնամուխ է եղել ոչխարների խուզմանը։

Սակայն շրջանային կազմակերպություններն և մի շարք կոլխոզների վարչություններ բավարար ուշադրություն չեն նվիրում անասնաբուծական ֆերմաներում աշխատատար պրոցեսները մեքենայացնելու գործին։ Այդ պատճառով պլանի կատարումը մինչև այժմ էլ դանդաղ է ընթանում։

Մեծ են շրջանի կոլխոզային պարտիական կազմակերպությունների խնդիրները գոյություն ունեցող թերությունները վերացնելու և հանրային կոլխոզային ու սովխոզային մթերատու անասնաբուծության զարգացման եռամյա պլանը հաջող կատարելու գործում։

Կոլխոզային սկզբնական պարտիական

կազմակերպությունները, անասնաբուծական ֆերմաների ագիտատորները պետք է ձգտեն, որ ոչ միայն յուրաքանչյուր կոլխոզնիկ և սովխոզի բանվոր խորապես ըմբռնի եռամյա պլանի էությունը, որն անպայման անհրաժեշտ է, այլև կոնկրետ նյութի հիման վրա ուղիներ ցույց տան այդ պլանը յուրաքանչյուր առանձին կոլխոզում, սովխոզում, յուրաքանչյուր ֆերմայում հաջողությամբ կատարելու համար։

Պետք է մեծ ուշադրություն նվիրել անասնաբուծության առաջավորների աշխատանքի փորձի լայն ժողովրդականացմանը։

Ագիտատորները պետք է հանդես գան որպես անասնաբուծության ճակատի աշխատողների սոցիալիստական մրցության եռանդուն կազմակերպիչներ։

Ա. ԱՅՐՈՒՄՅԱՆ
Գյուղատնտեսական գիտ. թեկնածու

—O—



## ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԸ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒՄ ԵՆ ՆԱԽԱՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆԸ

Ամբողջ երկրում լայն ծավալ է ստացել նախահոկտեմբերյան սոցիալիստական մըրցությունը հետպատերազմյան ստալինյան հնգամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու համար։ Սովետական ժողովրդի համար տրադիցիա է դարձել ամեն անգամ աշխատանքային նորանոր սխրագործություններով և սոցիալիստական շինարարության ասպարեզում ձեռք բերած նվաճումներով նշել Մեծ Հոկտեմբերի տարեդարձը։

Երևան քաղաքի ձեռնարկությունների և նորակառույցների բանվորներն ու ծառայողները, մտնելով նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ, նշանակալից հաջողություններ են ձեռք բերել աշխատանքի արտադրողականության բարձրացման և արտադրանքի որակի բարելավման գործում։

Սպանդարյանի ռայոնի արդյունաբերական ձեռնարկությունների պարտիական կազմա-

կերպությունները զգալի աշխատանք են կատարել նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցություն կազմակերպելու ասպարեզում։ Այդ գործում մեծ դեր են խաղում ագիտատորները, որոնք իրենց ամենօրյա ագիտացիոն-մասսայական աշխատանքով բանվորներին են հասցնում բոլշևիկյան կենդանի խոսքը, պարզաբանում են տվյալ ձեռնարկության առաջ դրված կոնկրետ խնդիրները և իրենց անձնական օրինակով աշխատանքային նորանոր սխրագործությունների ոգեշնչում նրանց։

Ռայոնի խոշոր արդյունաբերական ձեռնարկություններում ագիտատորները ամեն օր զրույցներ են կազմակերպում՝ նվիրված սոցիալիստական մրցության ծավալման հարցերին։ Վերցնենք, օրինակի համար՝ Թեթև արդյունաբերության մինիստրության Կարի առաջին ֆաբրիկայի ագիտկոլեկտիվի աշխատանքը։ Ֆաբրիկայի սկզբնական պարտկազմակերպության բյուրոն շաբաթական մեկ անգամ կանոնավոր կերպով հրավիրում է ագիտատորների սեմինար-պարապմունք, որտեղ մանրամասնորեն պարզաբանվում են ագիտատորների անելիքները, նրանց ուշադրությունը հրավիրում է առավել կարևոր հարցերի վրա, հանձնարարվում է զրույց-



ների ընթացքում օգտագործվելիք գրականությունը, թերթերն ու ամսագրերը։ Ցեխերի ու ագրեգատների ագիտատորները ամեն օր զրույցներ և թերթերի ընթերցանություններ են կազմակերպում բանվորների համար։ Ֆաբրիկայի պարտիական կազմակերպությունը սեպտեմբերին գործարանի կոլեկտիվի ուժերը մոբիլիզացրեց խոտան և երկրորդ տեսակի արտադրանքը վերացնելու և միայն բարձրորակ արտադրանք թողարկելու համար։ Բոլոր ցեխերի և ագրեգատների ագիտատորները պարզաբանեցին պարտկազմակերպության որոշումը և այն, թե ինչ պետք է անեն բանվորներն իրենք՝ այդ որոշումը հաջողությամբ կենսագործելու համար։ Ագիտացիոն-մասսայական լայն աշխատանք տարվեց բանվորների ու ծառայողների մեջ նախատոնական մրցության ծավալմամբ, արտադրական նոր նվաճումներով Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայի 32-րդ տարեդարձը դիմավորելու համար։ Լույս ընծայվեցին պատի թերթի հատուկ համարներ և խլրիշովկաներ։

Կատարված ագիտացիոն-մասսայական աշխատանքի և մի շարք կազմակերպական-տեխնիկական միջոցառումների շնորհիվ ֆաբրիկան, որ մինչ այդ թերակատարում էր

արտադրական պլանը և տալիս էր ցածրորակ արտադրանք, սեպտեմբեր ամսվա պլանը կատարեց ժամկետից երեք օր շուտ և որակական բարձր ցուցանիշներով։ Ֆաբրիկայի առանձին ագիտատորներ իրենց պլանը կատարեցին ժամկետից 7—8 օր շուտ, տալով միայն առաջին տեսակի արտադրանք։

Չորրորդ ագրեգատի ագիտատոր Արփիկ Այդինյանը ընդմիջումների ժամերին սիստեմատիկ կերպով կենդանի ու հետաքրքիր զրույցներ է կազմակերպում բանվորների հետ։ Նա նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության մեջ է ընդգրկել բոլոր բանվորներին և օգնում է նրանց՝ ստանձնած պարտավորությունները հաջողությամբ կատարելու համար։ Այդինյանի ղեկավարությամբ լույս են ընծայվում խլլիշովկաներ, որտեղ ցույց է տրվում ագրեգատի և առաջավոր բանվորների լավագույն աշխատանքը, ինչպես նաև քննադատվում նկատված թերությունները։ Չորրորդ ագրեգատը սեպտեմբերի պլանը կատարեց ամսի 26-ին և նրա արտադրած բոլոր 2355 վերնաշապիկներն ընդունվեցին որպես առաջին տեսակի։

Երրորդ ագրեգատի բանվորներից ոմանք թերակատարել էին հուլիսի և օգոստոսի պլանները։ Այդ նկատի ունենալով ագիտատոր



Գ. Ադամյանը իր զրույցների ժամանակ առանձնակի ուշադրություն դարձրեց այդ հարցերի վրա։ Նա ուշի ուշով հետևելով իրենց պլանները թերակատարող բանվորների աշխատանքին, պարզում էր, թե որոնք են նրանց հետ մնալու պատճառները և ապա այդ մասին զրույցներ էր ունենում նրանց հետ, օգնում թերությունները վերացնելու և ավելի լավ աշխատելու համար։ Այսպես, նա արթնացող բանվորուհի Ր. Մխիթարյանին տարավ և ցույց տվեց նույն ագրեգատի լավագույն բանվորուհի Լ. Սիմոնյանի աշխատանքը, բացատրեց, թե ինչպես պետք է հասնել նրան։ Ր. Մխիթարյանը կիրառելով ստախանովական բանվորուհի Լ. Սիմոնյանի աշխատանքի մեթոդները, ինքը ևս սկսեց գերակատարել իր առաջադրանքները։ Այսպիսի անհատական զրույցների շնորհիվ ագիտատոր Ադամյանը օգնեց նաև ագրեգատի բանվորներ Հ. Սահակյանին, Հ. Պալյանին, Թ. Հակոբյանին, Մ. Մկրտչյանին։

Կոմունիստների և կոմերիտականների օգնությամբ և իր անձնական օրինակով ագիտատոր Ադամյանը հասավ այն բանին, որ սեպտեմբերին բոլոր 42 բանվորներն էլ կատարեցին անհատական առաջադրանքները, իսկ մեծ մասը պլանների գերակատարումով

փակեց ամիսը։ Իսկ ագրեգատն ամբողջությամբ վերցրած ժամկետից շուտ՝ սեպտեմբերի 27-ին կատարեց ամսական պլանը, առաջին տեսակի արտադրանքի քանակը պլանով նախատեսված 83-ի փոխարեն հասցնելով 95,7 տոկոսի։

Շատ լավ արդյունքների հասավ ձեռք ցեխի ագիտատոր Բագրատ Ղազարյանը, որը նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության նվիրված իր զրույցներում հատուկ տեղ էր հատկացնում նյութերի տնտեսման հարցերին։ Ձեռք ցեխի համար այդ հարցը կարևոր նշանակություն ունի։ Ագիտատոր Ղազարյանն ամեն կերպ աշխատում է բարձրացնել ձևելու որակը, որպեսզի միայն բարձրորակ կիսաֆաբրիկատ հանձնվի ցեխերին։ Եվ նրա ցանասեր աշխատանքը լավ արդյունքներ է տալիս։ Միայն սեպտեմբեր ամսում ցեխը կտորեղենի այնքան տնտեսում ունեցավ, որ հնարավոր կլինի դրանից 230 լրացուցիչ կոստյում կարել։ Կտորեղենի տնտեսման գործում լավագույն օրինակ ցույց տվին կոմունիստ Սոս Հարությունյանը և կոմերիտական Ժենյա Մարյանը, որոնցից առաջինը տնտեսեց 6.400 ռուբլու, իսկ երկրորդը՝ 4.950 ռուբլու կտորեղեն։

Ուսանելի է նաև Կիրովի անվան փայտա-



մըշակման ֆաբրիկայի ագիտատորների դրական աշխատանքի փորձը։ Պարտիական կազմակերպությունը ճիշտ է ընտրել ագիտատորների կազմը, որպես ագիտատորներ առաջադրելով փորձված, հեղինակավոր և գործիմաց ընկերների։ Գ. Ասլանյանը և Կ. Կարախանյանը երկար ժամանակ է ինչ աշխատում են այդ ֆաբրիկայում և իրավամբ համարվում են առաջավոր ատաղձագործներ։ Նրանք երկուսն էլ կատարել են իրենց հնգամյա պլանները և ներկայումս աշխատում են 1951 թվի հաշվին։ Նրանք միաժամանակ ագիտատորներ են, և արտադրության տեխնոլոգիական պրոցեսի բարելավման, որակի բարձրացման ու կահույքի նոր տեսակների արտադրության ասպարեզում եղած շատ նախաձեռնություններ պատկանում են նրանց։

Կարախանյանը հավաքման ցեխի ագիտատորն է։ Նրան ամբողջ ժամանակ կարելի է տեսնել բրիգադայում։ Վաղ առավոտյան նա բրիգադայի անդամներին հաղորդում է նախորդ օրվա աշխատանքի արդյունքները, ծանոթացնում է օրվա հրատապ հարցերին, օգնում ավելի լավ աշխատելու։ Ընդմիջման ժամին նա սիստեմատիկաբար զրույցներ է կազմակերպում բանվորների համար՝ մի-

չազգային դրության, մեր պարտիայի և կառավարության որոշումների, մեր երկրի և ռեսպուբլիկայի խոշոր գործարանների ու ֆաբրիկաների արտադրական նվաճումների և այլ հարցերի մասին, հմտորեն այդ հարցերը կապակցելով գործարանի և ցեխի առաջ կանգնած կոնկրետ խնդիրների հետ։ Կազմակերպում է թերթերի բարձրաձայն ընթերցանություններ։

Կոմերիտական-երիտասարդական բրիգադան պարտավորվել է թողարկել միայն բարձրորակ արտադրանք և երբ մեկ անգամ հավաքող Ռ. Մարտիրոսյանը տվել էր երկրորդ տեսակի արտադրանք, ագիտատոր Կարախանյանը այդ հարցը քննության առարկա դարձրեց ցեխի աշխատողների ժողովում։ Մարտիրոսյանը խոստացավ այլևս երբեք երկրորդ տեսակի արտադրանք չտալ և ջանասիրությամբ կատարում է իր խոսքը։

Ֆաբրիկայի լավագույն ագիտատորներից է նաև Ասլանյանը, որը նախապես պլանավորում է իր զրույցների թեման, խնամքով նախապատրաստվում զրույցներին։ Այդ պատճառով էլ նրա զրույցներն անցնում են աշխույժ, հետաքրքիր ու գրավիչ։ Նա իր զրույցների ժամանակ հաճախ երիտասարդ բանվորներին հաղորդում է վարպետներ Ն.



Աղլամազյանի, Մ. Իշխանյանի, Ս. Քամալյանի և ուրիշների դրական աշխատանքի փորձը, դրանով օգնելով երիտասարդ բանվորների աճման գործին։

Կիրովի անվան փայտամշակման ֆաբրիկայի ագիտատորների ամբողջ կոլեկտիվը մեծ օգնություն ցույց տվեց դիրեկցիային և պարտկազմակերպությանը՝ բոլոր բանվորների կողմից արտադրական նորմաների կատարմանը հասնելու համար։ Եթե մայիս ամսին իրենց պլանները չկատարող բանվորների թիվը հասնում է 20—25-ի, իսկ հուլիսին՝ 4-ի, ապա օգոստոս և սեպտեմբեր ամիսներին իրենց արտադրական նորմաները կատարեցին բոլոր բանվորները, առանց բացառության։

Բոլոր ագիտատորների պատվի խնդիրն է՝ նախահոկտեմբերյան սոցիալիստական մրցության օրերին էլ ավելի լայնորեն ծավալել ագիտացիոն-մասսայական աշխատանքը հետպատերազմյան ստալինյան հնգամյակի պլանները ժամկետից շուտ կատարելու և արտադրական նորանոր հաջողությունների հասնելու համար։

Գ. ԴԱԼԱՔՅԱՆ

ՀԿ(բ)Պ Երևանի Սպանդարյանի ռայկոմի քարտուղար

—О—

# ԲՐԻԳԱԴԻՐ ՍՐՄՈՅԱՆԸ ԵՎ ԱԳԻՏԱՏՈՐ ՎԻՐԱԲՅԱՆԸ ՊԱՅՔԱՐՈՒՄ ԵՆ ԱՐՏԱԴՐԱՆՔԻ ՈՐԱԿԻ ՀԱՄԱՐ

*Ստալինյան հնգամյակի տարիներին Հայաստանում ստեղծված արդյունաբերական նոր ճյուղերի թվին է պատկանում նաև Մուլիտի արդյունաբերությունը։ Երևանի Մուլիտի գործարանը, որը գործարկվել է 1937 թվականին, էլեկտրաձուլման միջոցով բազալտ քարից պատրաստում է բարձր կարծրություն և ջերմակայունություն ունեցող աղյուսներ, որոնք գործածվում են ապակու արդյունաբերության մեջ՝ ձուլման վառարաններ պատրաստելու համար։*

*Գործարանի կոլեկտիվը, տիրապետելով արդյունաբերության այդ նոր ճյուղի տեխնիկային, ոչ միայն կատարում և գերակատարում է պետական առաջադրանքները, այլև անընդհատ կատարելագործում է արտադրության տեխնիկան, բարձրացնում արտադրանքի որակը։*

*Գործարանի մի խումբ ինժեներների կող-*



*մից արտադրության մեջ մտցված կատարելագործության շնորհիվ շեշտակի կերպով բարձրացավ մուլիտի որակը, նրա ջերմակայունությունը։ Գործարանի արտադրած աղյուսներով պատրաստված ապակու ձուլման վառարաններն այժմ երեք անգամ ավելի դիմացկուն են, նախկինում արտադրած աղյուսներից պատրաստած վառարաններից։*

*Բարձրորակ արտադրանքի համար պայքար է մղում գործարանի ամբողջ կոլեկտիվը։ Այդ պայքարն առանձնապես ուժեղ թափ ստացավ, երբ հայտնի դարձավ անվանի վարպետի օգնական Ալեքսանդր Զուտկիխի հայրենասիրական նախաձեռնությունը։ Գործարանի պարտիական կազմակերպության հանձնարարությամբ նրա ագիտկոլեկտիվը ձեռնամուխ եղավ Զուտկիխի փորձի մասսայականացման, նրա օրինակով պայքար սկսեց արտադրանքի որակի բարձրացման համար։ Զրուցելով բանվորների հետ ագիտատորները հաշվի են առնում նրանց յուրաքանչյուր առաջարկությունը, այդ մասին հայտնում դիրեկցիային, հետևում, որպեսզի նրանց ըն-*

թացք տովի։ Արտադրանքի որակը բարելավող ամեն մի առաջարկության մասին ագիտատորները պատմում են բանվորներին, օգնում այն տարածելու գործում։

Ալեքսանդր Զուսկինի նախաձեռնությունը գործարանում առաջին կիրառողներից հանդիսացավ մուլիտի ցեխի Վ. Սրմոյանի ղեկավարած բրիգադան։ Ցեխի ագիտատոր, ինժեներ Զ. Վիրաբյանի օգնությամբ բրիգադան մի շարք կարևոր նորմուծություններ մտցրեց իր աշխատանքում, որը նպաստեց ինչպես արտադրանքի որակի բարձրացմանը, այնպես և պլանների գերակատարմանը։

Երբ Վ. Սրմոյանի բրիգադայի ձեռք բերած հաջողությունները ակներև և հաստատուն դարձան, ագիտատոր Զ. Վիրաբյանը կազմակերպեց բրիգադիր Սրմոյանի զրույցը։

— Միայն առաջին տեսակի արտադրանք տալու համար պայքարը մենք սկսեցինք բանվորական տեղի նախօրոք և լավ նախապատրաստումից,— ասաց Սրմոյանը։ Աշխատանքի անցնելուց առաջ մենք նախապատրաստում ենք բոլոր գործիքները, նյութերը, արկղերը, ձուլվածքի կաղապարները և աշխատանքի ժամանակ կարիք չի լինում այլևս նրանց ետևից ընկնելու։ Դուք բոլորդ գիտեք, թե մուլիտի որակի համար ինչպիսի



խաշոր նշանակություն ունի ձուլվածքը միշտ ժամանակին վառարանից դուրս բերելը։ Ուրեմն, եթե մենք նախօրոք պատրաստի չունենանք պահանջվող քանակի կաղապարներ և ձուլվածք կատարելիս նոր միայն սկսենք դրանք բերել, մենք ձուլվածքը պահանջվող ժամկետից ավելի կթողնենք վառարանի մեջ և այդպիսով կգցենք նրա որակը։

Մենք փնտռեցինք և գտանք, թե ինչպես ավելի նպատակահարմար է դասավորել կաղապարները։ Այդ գուցե ձեզ համար երկրորդական բան թվա, բայց փորձը ցույց տվեց, որ կաղապարները որոշ ձևով դասավորելով մենք արագացնում ենք նրանց լցնումը և այդպիսով բարձրացնում աշխատանքի արտադրողականությունը և միաժամանակ ապահովում որակը։

Հաջորդ օրը ագիտատոր Վիրաբյանի օգնությամբ ցեխի մյուս բրիգադաները կիրառեցին Վ. Սրմոյանի բրիգադայի փորձը և նույնպես զգալի չափով բարձրացրին արտադրանքի որակը։

Շինանյութերի արդյունաբերության մինիստրությունը Վ. Սրմոյանի բրիգադային շնորհել է գերազանց որակի բրիգադայի կոչում և պարգևատրել պատվոգրով։ Բրիգադան ժամկետից երեք և կես ամիս շուտ,

սեպտեմբերի 15-ին կատարեց իր 1949 թվականի արտադրական պլանը։

Գործարանի ապակու ցեխում արտադրողականության բարձրացման, արտադրանքի որակի բարելավման համար լավագույն պայքար է տանում ագիտատոր Գ. Բաղյանը։ Մշտապես լինելով բանվորների հետ, նա աչքաթող չի անում ոչ մի բան, որ արգելակ է հանդիսանում պլանների կատարմանը, կամ թե գցում է արտադրանքի որակը։ Բանվորների հետ ունեցած անհատական զրույցների ժամանակ ագիտատոր Բաղյանը նրանց մատնացույց է անում եղած թերությունները, օգնում վերացնելու դրանք։

Երկար ժամանակ մեքենավարներ Վ. Մալխասյանը և Ս. Այվազյանը թերակատարում էին իրենց պլանները, միաժամանակ տալով ցածրորակ արտադրանք։ Ագիտատոր Բաղյանը հետևեց նրանց աշխատանքին և տեսավ, որ դրա պատճառը նրանց մեքենաների անկանոն վիճակում գտնվելն է։ Ընկնելով պլանները միմիայն քանակապես կատարելու ետևից, նրանք մոռացություն են տալիս նորոգման ենթարկել մեքենաները։ Ագիտատորը խոսեց Մալխասյանի և Այվազյանի հետ, համոզեց նրանց նորոգման ենթարկել մեքենաները։ Նրանք այդպես էլ արեցին և ահա



սեպտեմբեր ամսին երկուսն էլ սկսեցին սիստեմատիկ կերպով կատարել և գերակատարել իրենց պլանները, տալով բարձրորակ արտադրանք։

Գործարանի ագիտկոլեկտիվը այնպես է դասավորել իր ուժերը, որ ագիտացիոն-մասսայական աշխատանքը սիստեմատիկ կերպով տարվում է գործարանի բոլոր աշխատողների մեջ՝ ինչպես գործարանում, գրասենյակում, այնպես և գործարանի բնակելի շենքի կառուցող բանվորների մեջ։

Եվ պատահական չէ, որ գործարանի արտադրական պլանների կատարման, արտադրության կուլտուրայի բարձրացման, արտադրանքի որակի բարելավման համար տարվող ագիտացիոն-մասսայական աշխատանքը լավ արդյունքներ է տալիս։ Մուլիտի գործարանը այս տարվա ութ ամսվա պլանը կատարեց 116,8 տոկոսով։ Գործարանի բանվորներից 23 մարդ արդեն կատարել են իրենց հնգամյա պլանները, իսկ 29 մարդ այս տարվա հուլիս ամսին կատարեցին տարեկան պլանները։

Դ. ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ

—O—

# ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ԴԵՄՈԿՐԱՏԻԱՅԻ ԵՐԿՐՆԵՐՈՒՄ

## ՏԵՔՍՏԻԼ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՎԵՐԵԼՔ

*Սովետական Բանակի կողմից Հունգարիայի ազատագրումից հետո երկրի աշխատավորները եռանդուն կերպով ձեռնամուխ եղան վերականգնելու պատերազմի ժամանակ քայքայված արդյունաբերությունը։ Ամենից շատ տուժած ճյուղերից էր հանդիսանում տեքստիլ արդյունաբերությունը։*

*Աշխատավորները վերականգնեցին տեքստիլ ֆաբրիկաները, բայց նրանց թողարկման համար անհրաժեշտ էր հումք՝ բամբակ։ Հունգարական երիտասարդ ռեսպուբլիկային օգնության եկավ Սովետական Միությունը։*

*Հունգարիայի եռամյա պլանի կենսագործման ընթացքում տեքստիլ արդյունաբերության արտադրանքի թողարկումը անընդհատ ավելանում էր։ 1947 թվին Հունգարիայի տեքստիլ արդյունաբերությունը տվեց 13,5 միլիոն մետր բրդյա գործվածքեղեն։ Խոշոր ձեռ-*



*նարկությունների ազգայնացումից հետո 1948 թվին տեքստիլ ֆաբրիկաները թողարկեցին արդեն 16,8 միլիոն մետր, իսկ այս տարի տեքստիլ արդյունաբերությունը կտա ոչ պակաս 18 միլիոն մետր բրդյա գործվածքեղեն, այսինքն 20 տոկոսով ավելի, քան նախապատերազմյան վերջին տարում։*

---

## ՆԱԽԱՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՄՐՑՈՒԹՅՈՒՆ

*Ռումինական ժողովրդական ռեսպուբլիկայի ձեռնարկություններում ծավալվում է աշխատանքային մրցություն ի պատիվ Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ ռևոլյուցիայի տարեդարձի։*

*Պատասխանելով Բուխարեստի «Վուլկան» մեքենաշինական գործարանի բանվորների կոչին, Բրաշով քաղաքի «Ստյաուա ռոշիե» վագոնաշինական գործարանի բանվորների և ինժեներա-տեխնիկական աշխատողների կոլեկտիվը պարտավորվեց 10 տոկոսով գերակատարել հոկտեմբեր ամսվա առաջադրանքը, բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, իջեցնել արտադրանքի ինքնարժեքը և հասնել հումքի խնայողության։*

Այդպիսի պարտավորություններ ստանձնեցին նաև Լոնյա-Մից ածխահանքերի բանվորները, Ռոման քաղաքի մետալուրգները, Բայկոյ քաղաքի նավթահանքերի բանվորները և ուրիշներ։

---

## ՍԼՈՎԱԿ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Չեխոսլովակիայում ժողովրդա-դեմոկրատական իշխանության տարիներին սլովակ ժողովուրդը տնտեսական և կուլտուրական նշանակալի վերելքի հասավ։ 1947 և 1948 թվականների ընթացքում Սլովակիայում գործարկվեցին 244 զանազան ձեռնարկություններ և արհեստանոցներ։ Այս տարի կառուցվում են մի շարք արդյունաբերական նոր ձեռնարկություններ։

Անշեղորեն բարձրանում է աշխատավորության կենսամակարդակը և կուլտուրան։ Վերջին երկու և կես տարիների ընթացքում բացվել են շատ նոր ուսումնական հաստատություններ և դպրոցներ։ 1947—1948 թվականներին Սլովակիայի բարձրագույն և մասնագիտական միջնակարգ ուսումնական հաստատություններում սովո-



րում էր 2.400 ուսանող, իսկ անցյալ ուսումնական տարում ուսանողների թիվը հասնում էր մոտ 13.000-ի։

Հոկտեմբերի 3-ին Սլովակիայում տեղի ունեցավ երեք նոր ուսումնական հաստատությունների՝ բարձրագույն գեղարվեստական դպրոցի, Բրատիսլավում բարձրագույն երաժշտական դպրոցի և Կոշիցայում բարձրագույն անասնաբուժական դպրոցի հանդիսավոր բացումը։

---

## ԱՆԳՐԱԳԻՏՈՒԹՅԱՆ ՎԵՐԱՑՈՒՄԸ

Այն բանից հետո, երբ Ալբանիայի ժողովրդական ժողովի նախագահությունը դեկրետ ընդունեց 12-ից 40 տարեկան բոլոր քաղաքացիներին պարտադիր կերպով գրագիտություն սովորեցնելու մասին, լուսավորության բաժանմունքները մասսայական կազմակերպությունների, պրոֆմիութենական, երիտասարդական և կանանց կազմակերպությունների աջակցությամբ անհրաժեշտ միջոցառումներ են ձեռք առնում այդ դեկրետը կենսագործելու համար։

Նոյեմբերի 1-ին ամբողջ երկրում բացվում են անգրագիտության վերացման դասընթացներ: Ժողովրդական կրթության բաժանմունքները և հատուկ հանձնաժողովները, որոնք ստեղծված են այդ նպատակի համար, իրենց վրա են վերցնում մի շարք պարտավորություններ անգրագիտության վերացման կամպանիան լավագույն ձևով կազմակերպելու համար: Դորրես քաղաքում, օրինակ, նախատեսված է բաց անել անգրագիտության վերացման 278 դասընթացներ, ուր հաճախելու են 4.400 մարդ:

---

## ԼԵՀԱԿԱՆ ԳՅՈՒՂԻ ԿՈՒԼՏՈՒՐԱՆ

Լեհական պրոֆմիությունների Միավորման կենտրոնական խորհուրդը գյուղում կուլտուր-մասսայական աշխատանք տանելու համար հատկացրեց 100 միլիոն զլոտի: Այս գումարը ծախսվելու է գյուղական 400 գրադարանների համար գրքեր գնելու, խրճիթ-ընթերցարանների կահավորման, գյուղական գեղարվեստական ինքնագործունեության կոլեկտիվների համար. երաժշտական գործիքներ գնելու և կուլտուր-մասսայական աշխա-



տողների պատրաստման դասընթացներ կազմակերպելու համար:

Լեհական գյուղի կուլտուրան այժմ վերելք է ապրում: Այսպես օրինակ, միայն Օլշտինյան վոյեվոդության մեջ այս տարի բացվել են 17 գավառական և 67 գյուղական գրադարաններ, որոնք ունեն մոտ 200 հազար գիրք: Այդ վոյեվոդության մեջ կա 858 խրճիթ-ընթերցարան, որոնց կից աշխատում են 145 դրամատիկական և 25 երաժշտական խմբակներ:

Կուլտուր-լուսավորական լայն գործունեություն է ծավալել լեհ-սովետական բարեկամության Ընկերությունը: Վարշավայում եղած ռուսական կլասիկ և սովետական գրականության կենտրոնական գրադարանից բացի, ընկերությունը կազմակերպել է 15 վոյեվոդյան և 80 գավառական գրադարան, որոնք տարածում են հարյուր հազարավոր սովետական գրքեր և սպասարկում սովետական հրատարակությունների տասնյակ հազարավոր բաժանորդների:

—○—

# ՉԻՆԱՍՏԱՆԻ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅԻ ՍՏԵՂԾՈՒՄԸ

1949 թվի սեպտեմբերի 21-ից մինչև հոկտեմբերի 1-ը Բեյպինում տեղի ունեցավ Չինաստանի ժողովրդական քաղաքական կոնսուլտատիվ կոնֆերանսը։ Կոնֆերանսին մասնակցում էին 626 դելեգատ, որոնք ներկայացնում էին՝ երկրի բոլոր դեմոկրատական պարտիաների ու խմբերի, ժողովրդական կազմակերպությունների, ժողովրդա-ազատագրական բանակի, զանազան շրջանների և ազգային խմբերի, ինչպես նաև արտասահմանյան չինական քաղաքացիների և մյուս բոլոր հայրենասիրական կազմակերպությունների ու տարրերի ներկայացուցիչները։

Կոնֆերանսը միաձայնությամբ և ժողովրդական դեմոկրատիայի սկզբունքներին համապատասխան մշակեց Չինաստանի ժողովրդական քաղաքական կոնսուլտատիվ խորհրդի ստատուտը, Չինաստանի ժողովրդական ռեսպուբլիկայի Կենտրոնական ժողո-



վրդական կառավարության ստատուտը և Չինաստանի ժողովրդական քաղաքական կոնսուլտատիվ խորհրդի ընդհանուր ծրագիրը, այնուհետև որոշում ընդունեց, որ Չինաստանի ժողովրդական ռեսպուբլիկայի մայրաքաղաքը լինելու է Պեկինը, ապա հաստատեց հինգ աստղերով կարմիր դրոշակը որպես ռեսպուբլիկայի ազգային դրոշակ, հաստատեց «կամավորների քայլերգը» որպես ժամանակավոր ազգային հիմն, որոշում ընդունեց աշխարհի երկրների մեծ մասում ընդունված օրացույցը Չինաստանում մտցնելու մասին և այնուհետև ընտրեց Չինաստանի ժողովրդական քաղաքական կոնսուլտատիվ խորհրդի Ազգային կոմիտե և Չինաստանի ժողովրդական ռեսպուբլիկայի Կենտրոնական ժողովրդական կառավարական խորհուրդ։

Չին ժողովրդի պանծալի զավակ, Չինաստանի կոմունիստական պարտիայի փորձված առաջնորդ Մաո Ցզե-դունը ընտրվեց Չինաստանի ժողովրդական կառավարության նախագահ և միաժամանակ նշանակվեց Կենտրոնական ժողովրդական կառավարության ժողովրդա-ռևոլյուցիոն ռազմական խորհրդի նախագահ։ Չին ժողովրդի լեգենդար հերոս Չժու Դեն նշանակվեց ժողովրդա-ազատա-

ըական բանակի գլխավոր հրամանատար, Չժու Էն-լայը՝ պետական ադմինիստրատիվ խորհրդի պրեմիեր և միաժամանակ արտաքին գործերի մինիստր, Շեն Ջուն-ժան՝ գերագույն ժողովրդական դատարանի գլխավոր դատավոր և Լո Ժուան-խուանը՝ գլխավոր ժողովրդական դատախազության գլխավոր դատախազ։ Կենտրոնական ժողովրդական կառավարության խորհրդի գլխավոր քարտուղար է ընտրվել այդ խորհրդի անդամ Լեն Բո-ցզուն։

Չինական դեմոկրատական ուժերը, չինական կոմունիստական պարտիայի գլխավորությամբ, երկար ժամանակ մահու և կենաց պայքար էին մղում մի կողմից երկրի ներքին ֆեոդալական-միլիտարիստական չանկայշիական ռեակցիոն ռեժիմի դեմ, մյուս կողմից այդ պայքարը ուղղված էր օտարերկրյա իմպերիալիզմի զանազան ոհմակների դեմ, որոնք տարբեր ժամանակներում մեկը փոխարինում էր մյուսին, կամ բոլորը միասին էին ծվատում Չինաստանն ու արյունաքամ անում նրա ժողովրդին։ Առանձնապես ծանր էր չին ժողովրդի դրությունը վերջին երկու տասնամյակի ընթացքում, երբ Չան Կա-շիի կլիկի դավաճանության հետևանքով ճապոնական իմպերիալիզմը, զավթելով Չինա-



տանի անբաժանելի շատ մասը, փորձում էր ողջ Չինաստանը դարձնել գաղութ և ստրկացնել չին ժողովրդին։ Այդ գոտեմարտերից չին ժողովուրդը դուրս եկավ հաղթանակով։

«Չինական դեմոկրատիայի քաղաքական և ռազմական հաջողությունների կարևորագույն նախադրյալ— գրում է «Պրավդան»— հանդիսանում է համաշխարհային երկրորդ պատերազմում Գերմանիայի և Ճապոնիայի պարտությունը, ֆաշիզմի ջախջախումը, որը իրագործվեց Սովետական մեծ երկրի վճռական դերի պայմաններում։ Գերմանական և ճապոնական ռազմական մեքենայի ջախջախումը, ամբողջ աշխարհի դեմոկրատական ուժերի աճը և իմպերիալիզմի լագերի թուլացումը այն գործոններն են, որոնք կաշկանդելով միջազգային իմպերիալիզմի գլխավոր ուժերը, նպաստեցին չին ժողովրդի ազգային ազատագրական պայքարի շտեսնըված վերելքին և նրա պատմական հաղթանակներին»։

Ճապոնական իմպերիալիզմի ջախջախումից հետո նրա տեղը Չինաստանում բռնեց ամերիկյան իմպերիալիզմը, որը, օգտվելով գոմինդանական-չանկայշիական ռեակցիոն կլիկի ստրկամիտ քարեհաճությունից, մտա-

դըրվել էր Չինաստանը դարձնել իրեն հլու հնազանդ գաղութ։ Ճապոնացիների դեմ պատերազմը ավարտվելուց հետո Չինաստան մտան ամերիկյան զորքերը։ ԱՄՆ-ը միլիարդ դոլլարներ հատկացրեց Չինաստանում ազգային ազատագրական շարժումը զինված ձևով ճնշելու համար, չինական ժողովրդին ստրկացնելու համար։ ԱՄՆ-ը չսահմանափակվեց Չան Կայ-շիի ռեակցիոն կառավարությանը տնտեսական օգնություն ցույց տալով միայն, փաստորեն նա Չինաստանում իրագործում էր ուղղակի ռազմական ինտերվենցիա։ Ինչպես հակաճապոնական պատերազմի ժամանակ, այնպես էլ այժմ, Չինաստանի կոմունիստական պարտիան միավորեց բոլոր հայրենասիրական տարրերին երկրի ազգային անկախության համար, ամերիկյան իմպերիալիզմի կողմից ստըրկացնելու նոր սպառնալիքի վտանգի դեմ պայքարելու համար։ Այդ օրհասական պայքարից ևս չին ժողովուրդը հաղթանակով դուրս եկավ։ «Չինական դեմոկրատիայի հաղթանակները — գրում է «Պրավդան» — ոչ միայն գոմինդանական ռեակցիայի պարտությունն է, այլև Չինաստանում ամերիկյան գիշատիչ պլանների խորտակումը։ Ընդնանկացավ ամերիկյան իմպերիալիզմը, որը



երազում էր Չինաստանը դարձնել իր գաղութը՝ ագրեսիվ նոր պատերազմի մի հրակայական պլացդարմ»։ Այս դեպքում էլ չին ժողովուրդը հենվում էր սոցիալիզմի և դեմոկրատիայի լագերի հզոր ուժերի վրա։ Չինաստանի կոմպարտիայի առաջնորդ Մաո Ցզե-դունը, հանրագումարի բերելով չին ժողովրդի բազմամյա պայքարի արդյունքները, բացահայտելով չին ժողովրդի հաղթանակն ապահովող հանգամանքները, ի թիվս այլ պատճառների նշում է, որ «եթե գոյություն չունենար Սովետական Միությունը, եթե չլիներ հակաֆաշիստական համաշխարհային երկրորդ պատերազմում ձեռք բերված հաղթանակը, որը մեզ համար առանձնապես կարևոր էր — եթե ճապոնական իմպերիալիզմը չջախջախվեր, եթե Եվրոպայում երևան չգային նոր դեմոկրատիայի երկրները... ապա միջազգային ռեակցիոն ճնշումը, իհարկե, ավելի ուժեղ կլիներ, քան այժմ։ Մի՞թե մենք կարող էինք հաղթանակ տանել այդպիսի հանգամանքներում։ Իհարկե ոչ»։

Չինական ժողովուրդը պատմական հաղթանակի հասավ երկրի ներքին ռեակցիայի և միջազգային իմպերիալիզմի միացյալ ուժերի դեմ մղած իր երկարատև ու համառ պայքարում։ Նոր պայծառ էջ է բացվել 475

միլիոնանոց մեծ ժողովրդի կյանքում։ Չինաստանում ֆեոդալիզմի և իմպերիալիզմի դեմ մղվող պայքարին մասնակցում են երկրի ամենալայն մասսաները բանվոր դասակարգի և նրա մարտական ավանգարդի՝ կոմունիստական պարտիայի գլխավորությամբ, որոնք հենվելով սոցիալիզմի և դեմոկրատիայի հզոր լագերի աջակցության վրա, նվաճեցին իրենց ազգային անկախությունը և երկիրը ժողովրդական դեմոկրատիայի ուղիով զարգացնելու հաստատուն հիմքերը դրեցին։

Չինական ժողովուրդը ոչնչացնում է գոմինդանական ռեակցիոն-ֆեոդալական ռեժիմը և դնում է ժողովրդական պետության հիմքերը։ Այդ պետությանը գլխավորում է բանվոր դասակարգը, նա հիմնվում է բանվորների և գյուղացիների դաշինքի վրա և միավորում է Չինաստանի դեմոկրատական բոլոր դասակարգերն ու ազգային բոլոր փոքրամասնությունները։

Մեր պարտիայի Կենտկոմի օրգան «Պրավդա» թերթը, նշելով չին ժողովրդի պատմական հաղթանակը, ընդգծում է այն հանգամանքը, որ «Չինաստանի կոմունիստական պարտիան, ղեկավարվելով կոմունիզմի գիտական թեորիայով, հանդիսացավ գլխավոր



ուժը Չինաստանում ազգային անկախության համար, ժողովրդական դեմոկրատիայի հաղթանակի համար մղվող պայքարում։

Չին ժողովրդի պատմական հաղթանակը հանդիսանում է մարքսիստական-լենինյան ուսմունքի ամենահաղթ ուժի ցուցադրումը»։

Այժմ չինական հողը մաքրվում է ժողովրդի ոխերիմ թշնամիներից։ Չինաստանի ժողովրդի մեծ մասը արդեն ազատ է իմպերիալիստական, ֆեոդալական ճնշումից։ Չինաստանի արդյունաբերական և կուլտուրական խոշորագույն կենտրոնները, նրա կարևորագույն նավահանգիստները և երկաթուղային մագիստրալները արդեն մաքրվել են թշնամուց։ Լիովին ազատագրվել են Հյուսիսային, Կենտրոնական Չինաստանը, Հարավային Չինաստանի զգալի մասը։ Ժողովրդա-ազատագրական բանակի զորքերը գրավել են Կանտոնը, գոմինդանականների ձեռքում գտնված վերջին խոշոր նավահանգիստը։

Չինաստանի Կենտրոնական ժողովրդական կառավարությունը արդեն ձեռնամուխ է եղել կենսագործելու Չինաստանի ժողովրդական քաղաքական կոնսուլտատիվ խորհրդի ընդհանուր ծրագիրը։ Այդ ծրագրում շարադրված են ժողովրդական Չինաստանի ընդ-

հանուր սկզբունքները, պետական իշխանության օրգանները, ռազմական սիստեմը, տնտեսական քաղաքականությունը, քաղաքականությունը կուլտուրայի, լուսավորության ասպարեզում և ազգային հարցում, արտաքին քաղաքականությունը։

Այդ ծրագրում ասված է այն մասին, որ Չինաստանում ժողովրդա-ազատագրական պատերազմի և ժողովրդական ռևոլյուցիայի մեծ հաղթանակները վերջ են տալիս իմպերիալիզմի, ֆեոդալիզմի և բյուրոկրատական կապիտալի իշխանության ժամանակաշրջանին։ Ճնված դրությունից չինական ժողովուրդը դարձել է նոր հասարակության և նոր պետության տեր ու տնօրենը և ֆեոդալական կոմպրադորական, ֆաշիստական դիկտատորական գոմինդանական ռեակցիոն կառավարությունը փոխարինվել է ժողովրդական դեմոկրատիայի դիկտատուրայի ռեսպուբլիկայով։

Չինաստանի ժողովրդական ռեսպուբլիկան հանդիսանում է նոր դեմոկրատիայի, կամ ժողովրդական դեմոկրատիայի պետություն։ Ռեսպուբլիկան իրագործում է ժողովրդական դեմոկրատիայի դիկտատուրան, որին գլխավորում է բանվոր դասակարգը, այդ դիկտատուրան հիմնված է բանվոր դասակարգի



և գյուղացիների դաշինքի վրա և միավորում է Չինաստանի բոլոր դեմոկրատական դասակարգերն ու բոլոր ազգային փոքրամասնությունները։ Ռեսպուբլիկան պայքար է մղում իմպերիալիզմի, ֆեոդալիզմի և բյուրոկրատական կապիտալի դեմ և ձգտում է անկախության, դեմոկրատիայի, խաղաղության, միավորման, ծաղկման և ուժեղ Չինաստանի ստեղծման։

Չինաստանի ժողովրդական ռեսպուբլիկան պետք է չեղյալ հայտարարի Չինաստանում իմպերիալիստական երկրների բոլոր արտոնությունները, բռնագրավի բյուրոկրատական կապիտալը և այն դարձնի ժողովրդական պետության սեփականությունը, հողատիրության ֆեոդալական և կիսաֆեոդալական սիստեմը պետք է սիստեմատիկորեն վերափոխի և դարձնի գյուղացիական հողատիրության սիստեմ, պետք է պահպանի պետության հանրային սեփականությունը և կոոպերատիվ սեփականությունը, պահպանի բանվորների, գյուղացիների, մանր բուրժուազիայի և ազգային բուրժուազիայի տնտեսական շահերը և մասնավոր սեփականությունը, պետք է զարգացնի նոր դեմոկրատիայի ժողովրդական տնտեսությունը և

երկիրը գյուղատնտեսական երկրից անշեղո-
րեն դարձնի ինդուստրիալ երկիր։
Չինաստանի ժողովրդական ռեսպուբլիկա-
յի տնտեսական շինարարության հիմնական
սկզբունքն է՝ արտադրության զարգացումը և
բարգավաճող տնտեսության ստեղծումը՝
հասարակական և անձնական շահերի, աշ-
խատանքի և կապիտալի օգուտների, քաղաքի
և գյուղի փոխօգնության, երկրի ներսում և
արտաքին աշխարհի հետ ապրանքաշրջանա-
ռության զարգացումը հաշվի առնելու հիման
վրա։
Պետական էկոնոմիկայի սեկտորը կրում է
սոցիալիստական բնույթ։ Երկրի տնտեսա-
կան կյանքի և ժողովրդի բարեկեցության
համար կարևոր նշանակություն ունեցող բո-
լոր ձեռնարկությունները կգտնվեն պետա-
կան միասնական կառավարման ներքո։ Պե-
տությանը պատկանող բոլոր ռեսուրսները և
ձեռնարկությունները հանդիսանում են ժո-
ղովրդի հանրային սեփականություն։ Նրանք
հանդիսանում են ժողովրդական ռեսպուբլի-
կայի գլխավոր նյութական բազան արտա-
դրությունը զարգացնելու և ծաղկուն էկոնո-
միկա ստեղծելու գործում և հանրային ամ-
բողջ էկոնոմիկայի առաջատար ուժն են։
Այս սկզբունքներից ելնելով պետությունը



կկոորդինացնի և կկարգավորի պետական,
կոոպերատիվ, մասնավոր գյուղացիական և
արհեստագործական, մասնավոր կապիտա-
լիստական սեկտորների և պետական կապի-
տալիզմի սեկտորի արտադրական գործու-
նեությունը, նրանց հումք մատակարարելու,
նրանց արտադրանքը վաճառահանելու, նը-
րանց համար բանվորական ուժ և տեխնիկա-
կան սարքավորում ապահովելու, նրանց ֆի-
նանսավորելու գործը և այլն։
Չինաստանի ժողովրդական կառավարու-
թյունը, ելնելով երկրի արտադրողական ու-
ժերի զարգացման շահերից, հետևողական
կերպով անց է կացնում հողային ռեֆորմ՝
իրագործելով «Հողը հողագործներին» սկզ-
բունքը։
Այս սկզբունքները սոսկ դեկլարատիվ
բնույթ չեն կրում։ Չինաստանի ժողովրդական
կառավարությունը դրանք արդեն սկսում է
կենսագործել կյանքում։ Բռնագրավվում և
պետությանն են հանձնվում օտարերկրյա
կապիտալի հետ սերտորեն կապված ռեակ-
ցիոն գոմինդանական վերնախավին և չինա-
կան բուրժուազիայի մագնատներին պատ-
կանած արդյունաբերական, գյուղատնտեսա-
կան և այլ ձեռնարկությունները։ Հաջողու-
թյամբ վերակառուցվում են երկաթուղիները,

ֆաբրիկաներն ու գործարանները, ածխահանքերն ու հանքահորերը։ Ստեղծվում է ժողովրդական շահերին ենթարկվող տնտեսության սեկտոր, որին առաջատար տեղ է պատկանում դեմոկրատական Չինաստանի ժողովրդական տնտեսության մեջ։ Ազատագրված մի շարք շրջաններում՝ Մանջուրիայում, Հյուսիսային Չինաստանում անցկացված հողային ռեֆորմը քայքայեց ֆեոդալական հողատիրության հիմքերը։ Կալվածատերերի և ազգային դավաճանների հողը բռնագրավվել և բաշխվել է հողազուրկ և սակավահող գյուղացիներին։ Վերջին երկու տարվա ընթացքում ավելի քան հարյուր միլիոն չին գյուղացիներ հողաբաժիններ են ստացել։ Չին գյուղացին, որին դարեր շարունակ ճնշում էին ֆեոդալները, առաջին անգամ սկսեց իր հողը մշակել առանց ստրկական վարձակալության վաշխառուական տոկոսների։

Սկսվում է պետական լայն միջոցառումների կիրառումը քաղաքի և գյուղի աշխատավորների նյութական կենցաղային և կուլտուրական բարեկեցությունը բարձրացնելու համար։

Չինաստանի ժողովրդական ռեսպուբլիկայում լայն դեմոկրատական իրավունքներ են



տրվում քաղաքացիներին բոլոր բնագավառներում։ Բոլոր ազգությունները վայելում են հավասար իրավունքներ և կրում են հավասար պարտականություններ։ Վերացվում է ֆեոդալական սիստեմը, որը կնոջը դնում էր ստրկական վիճակի մեջ։ Կանայք պետք է վայելեն տղամարդկանց հետ հավասար իրավունքներ քաղաքական, տնտեսական, կուլտուրական և հասարակական կյանքում, ինչպես նաև լուսավորության բնագավառում։ Մտցվում է ամուսնության ազատությունը, ինչպես տղամարդկանց, այնպես էլ կանանց համար։

Չինաստանի անկախությունը, տերիտորիալ ամբողջականությունն ու սուվերենությունը, չին ժողովրդի բոլոր օրինական իրավունքները, շահերն ու նրա պատմական նվաճումները պաշտպանելու նպատակով Չինաստանի ժողովրդական ռեսպուբլիկան ստեղծում է իր զինված ուժերը՝ ժողովրդաազատագրական բանակը, հասարակական անվտանգության ժողովրդական զորքերը և ժողովրդական ոստիկանությունը։

Չինաստանի ժողովրդական ռեսպուբլիկան կմիավորվի աշխարհի բոլոր խաղաղասեր և ազատասեր երկրների ու ժողովուրդների և ամենից առաջ Սովետական Միության հետ,

ժողովրդական դեմոկրատիայի բոլոր երկըրների ու բոլոր ճնշված ազգերի հետ և կգտնվի միջազգային խաղաղության ու դեմոկրատիայի ճակատում, համատեղ պայքարի դուրս կգա իմպերիալիստական ագրեսիայի դեմ և կպաշտպանի կայուն խաղաղություն ամբողջ աշխարհում:

Հավատարիմ լինելով անմահ Լենինի պատգամներին, մեծ Ստալինի ղեկավարությամբ սովետական ժողովուրդը միշտ ապես խոր համակրանքով է վերաբերվել չինական ժողովրդական մասսաների ազգային-ազատագրական պայքարին: Այսօր սովետական ժողովուրդը մեծ բերկրանքով ողջունում է այդ երկարատև պայքարի պատմական հաղթանակները՝ չինական ժողովրդական ռեսպուբլիկայի կազմակերպումը: Սովետական ժողովուրդը ջերմ հավանություն է տալիս այն բանին, որ Սովետական Միության կառավարությունը առաջինը ճանաչեց Չինաստանի ժողովրդական կառավարությանը:

—○—

# Ի՞ՆՉ ԿԱՐԴԱԼ

**Բ. ՅԱԿՈՎԼԵՎ.— «Ինչպես օգտվել գեղարվեստական գրականությունից ագիտացիոն աշխատանքում»: Հայպետհրատ, 1949 թ.:**

«Ագիտատորի գրադարան»-ի սերիայով լույս տեսած վերոհիշյալ բրոշյուրը նվիրված է ագիտացիոն աշխատանքում գեղարվեստական գրականության օգտագործման հարցին: Բրոշյուրում հանգամանորեն ցույց է տրված գեղարվեստական գրականության ներգործման ուժը և նրա օգտագործման բազմապիսի ձևերն ու մեթոդները:

Ագիտացիոն աշխատանքում գեղարվեստական գրականության օգտագործման ամենատարածված ձևը դա գեղարվեստական երկերի կոլեկտիվ ընթերցանությունն է: Բացի այդ, ագիտատորը պետք է միշտ ապես ղեկավարի իր ունկնդիրների ինքնուրույն ընթերցանությունը, գրադարանի աշխատողների հետ միասին հաճախակի կազմակերպի ինքնուրույն կերպով կարդացած գրքերի կոլեկտիվ քննարկումներ՝ ընթերցողների կոնֆերանսներ: Դաստիարակչական մեծ նշանակություն ունեն գրողներին և նրանց ստեղ-

ծագործություններին նվիրված գրույցներն ու զեկուցումները, գրական երեկոները, հանդիպումները գրողների հետ, գրական ցուցահանդեսները։

Ագիտատորն իր ագիտացիոն ելույթներում՝ գրույցի, զեկուցման, ճառի ժամանակ պետք է մշտապես օգտագործի գեղարվեստական երկերը կամ նրանցից ընտրած առանձին հատվածները, գեղարվեստական կերպարները, որոնք օգնում են նրան ավելի ցայտուն, կենդանի և մատչելի դարձնել իր ոգեշնչող խոսքը։

Ռուսական կլասիկ գրականությունը գեղարվեստական կերպարների մի անսպառ գանձարան է։ Բրոշյուրում ցույց է տրված, թե ինչպես Լենինը և Ստալինը իրենց ճառերում լայնորեն օգտագործել են ռուս կլասիկ գրողների ստեղծած այս կամ այն գեղարվեստական կերպարները և թևավոր արտահայտությունները։ Հատկանշական է ագիտացիոն աշխատանքում սովետական գեղարվեստական գրականության օգտագործման նշանակությունը, որն օգնում է աշխատավորների դաստիարակելու սովետական հայրենասիրության ոգով, ոգեշնչում նրանց աշխատանքային ու մարտական սխրագործությունների հանուն կոմունիզմի հաղթանակի։



Կոնկրետ օրինակներով ու փաստերով ցույց են տրված, թե մեր գործարանների ու կոլխոզների լավագույն ագիտատորները իրենց աշխատանքում ինչպես են օգտագործում սովետական գեղարվեստական գրականության այս կամ այն երկը, մեր գրողների ստեղծած կերպարներն ու թևավոր խոսքերը, որոնք բարձրացրել են ագիտացիոն աշխատանքի մակարդակը և բոլշևիկյան ագիտացիոն խոսքը դարձրել ավելի համոզեցուցիչ, արտահայտիչ և ցայտուն։

Գիրքը ագիտատորի մտերիմ բարեկամն է։ Եվ որպեսզի ագիտատորն իր աշխատանքում լայնորեն օգտագործի գեղարվեստական գրականությունը, առաջին հերթին ինքը պարտավոր է սիստեմատիկորեն ուսումնասիրել գեղարվեստական գրականությունը և հանդես գալ որպես գրքի պրոպագանդիստ։

Խոսելով գեղարվեստական գրականությունը գիտենալու անհրաժեշտության մասին Մ. Ի. Կալինինը ասել է. «...Կուլտուրայի բարձրացումը— դա առաջին հերթին գեղարվեստական գրականությունը իմանալն է։ Նա մարդուն կուլտուրապես ամենից շատ է հարստացնում, հնարավորություն է տալիս (ես դատում եմ իմ փորձով) մարդուն աճելու, ավելի լավ հասկանալու մարդկանց»։

—○—

ԳԻՆԸ 50 ԿՈՊ.

# ՆՈՐ ԳՐՔԵՐ

Հայպետհրատի հրատարակությամբ լույս են տեսել.

Կ. ՍԻՄՈՆՈՎ— Օրեր և գիշերներ: 398 էջ, գինը 15 ռ.:

Վ. ԳՐԻՇԻՆԻՆ և Ս. ՌՈԴԻՈՆՈՎ— Ինչպես պատրաստվել զեկուցման: 82 էջ, գինը 1 ռ.:

Ա. Ն. ԶՈՀՐԱԲՅԱՆ— Կլեմենտ Արկադևիչ Տիմիրյազևի կյանքը և գործունեությունը: 33 էջ, գինը 1 ռ.:

Ա. ՌՈՍԿԻՆ— Մաքսիմ Գորկի: 198 էջ, գինը 5 ռ.:

Գ. Պ. ԶԱՔԱՐՅԱՆ— Գյուղատնտեսական կենդանիների լիարժեք կերակրումը: 26 էջ, գինը 1 ռ.:


Պատասխանատու խմբագիր՝ Հ. ԱՅՎԱԶՅԱՆ

ՎՖ 03862 Պատվեր № 762 Տիրաժ 8.300

Հայպոլիգրաֆհրատի վարչության № 2 տպարան, Երևան

Отдел Пропаганды и агитации ЦК КП(б) Армении

БЛОКНОТ АГИТАТОРА

№ 19 1949 г.